// ԷՋՄԻԱԾԻՆ

ԿՐՕՆԱ-ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՄՍԱԹԵՐԹ

ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ, ԹԻՒ 3 ՖՐԷԶՆՕ, ՔԱԼ. ՄԱՅՍ 1919 ՏԱՄԸ ՍԷՆԹ

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ

## ՈՐԲԱԽՆԱՄՆԵՐՈՒ ԱՐԺԷՔԸ

«Կի՛ն դու, ահա որդի քո . . .
Ահա մայր քո» . . . : Յովհ. ԺԹ. 26:

*Երբեմն գրքեր ու գրականութիւններ կան, որոնց հեղինակները հաճելի ըլլալու համար ընթերցողներուն, հազարումէկ դարձուածներով, բանաստեղծական վերաալացիկ արտայայտութիւններով, բանադրօսիկճիզերով զանուած ընտրեալ բառերով կը զարդարեն ու կը ճոխացնեն իրենց ըսելիքները, ու քանի մը տողով բացատրուելիք միտքի մը համար երկայն էջեր կը լեցնեն։ Այնպէս որ անոնց մէջէն կարելի է շատ մը յապաւումներ ընել, առանց գրուածքի նիւթէն բան մը պակսեցնելու։*

*Սուրբ Գիրքը գրականութեան բոլոր ճիւղերն ալ ունի իր մէջ։ Բայց անկէց կարելի չէ ոչ միայն յապաւումներ ընել, այլ և կարելի չէ խաղալ նոյնիսկ ստորակէտի մը հետ։ Այնպէս որ անոր մէկ նախադասութիւնը և մինչև անգամ ամէն մէկ բառը շատ անգամ ծնունդ տուած են ընդարձակ և ճոխագոյն գրականութիւններու, հոգեոր, բարոյական, մտաւոր, տնտեսագիտական և առողջապահական ներշնչումներու, բեմբասացութիւններու դասախօսութիւններու և քարոզներու։*

*— Արտաքին և ներքին աշխարհներէ եկած ամէն տեսակ վիշտերու և տառապանքներու հանդէպ համայնաբուժ բանալ մը եղած է ան՝ Ս. Գիրքը անոնց համար, որոնք ամենամաքուր հաւատք և վստահութիւն ունեցած են անոր պատուական ճշմարտութեանց մասին։*

*Հայկական վերջին գողգոթայի բարձանց վըրայ մօտաւորապէս մէկ միլիոն հայութիւնը առանց այդ հաւատքին, առանց անոր վրայ ունեցած իր խորունկ համոզումին, պիտի հրաժարէր, իր հայրենասիրական պզացումներէն ալ, իր կրօնքէն ալ և ամէն այն բաներէն որոնք կը պատկանին կրօնական և ազգային գաղափարականներուն։*

*Հայութիւնը այդ հաւատքին ուժովն էր որ բարձրացաւ հոն, անհատ կառափնատին վրայ, մանկութիւն, պատանեկութիւն, երիտասարդութիւն, հայրութիւն, մայրութիւն և ծերութիւն, ի մի ձուլուած իրենց ցեղին, կրօնին և հայրենիքին փրկութեանը համար ամենամեծ զոհը և պատարագը տուին, որուն նմանը չէին տեսած այս մոլորակը և զայն ստեղծող Աստուծոյ աչքերը։ Թուրքին նման չարչարող ու Հայուն նման չարչարուող ժողովուրդ դեռ չեն ապրած այս երկրին վրայ։*

*Այդ կրօնի և ազգութեան գաղափարականներով կազմուած զոհաբերութեան սեղանին վրայ ողջակիզուած Հայութեան փափուկ ծիլերը սակայն, Հայ որբութիւնը, որուն իրական թուոյն վրան տողյդ գաղափար մը կազմել շատ դժուար եղած է, դեռ կ'ապրի այսօր։*

*Այս է ահա ամէն բանէ աւելի թանկ արժող իրականութիւնը կամ աւանդը որ կը մնայ մեզի համաշխարհային պատերազմէն։ Ինչ ընելու ենք։*

*Այլ և այլ շրջաններու պատկանող մարդկային կեանքի բնական կարգն այն է, որ մանկութեան հոգն ու խնամքը կը պատկանի մայրութեան։ Այս այսպէս է նոյն իսկ անասուն կենդանիներու մէջ։ Մայր ճնճղուկն է որ աւելի հոգ ու խնամք կը տանի իր անզօր ձագուկներուն։*

*Ի՞նչ պիտի ըլլայ մեր հայրիկ հազարաւոր*

եղկելի որբերու վիճակը: Հայկական Բարեգործական Ընդհ. Միութիւնը գերմարդկային ճիգեր կը թափէ որբերու համար անոնց արցունքը, և տէր ու պաշտպան կը կանգնի անոնց: Բայց որչափ որ ամէն մէկ հայ անհատ, գլխաւորաբար Ամերիկայի, Եւրոպայի, Հնդկաստանի և Եգիպտոսի մէջ չի մոռնար անոր, չի բոլորուիր անոր շուրջ, նա անբաւական պիտի ըլլայ հասնելու Հայ որբերու ծով կարիքներուն: Եւ անոնցմէ շատեր օտար ձեռքերու մէջ, իբր թէ մարդասիրաբար, խնամուելով պիտի բաժնուին մայր արմատէն: Անարիւն կոտորած մը չէ՞ ասիկայ:

Իսկ առանց վերև յիշուած երկիրներու Հայ կնոջական կազմակերպութիւններուն, առանց հայ որբախնամներու, առանց հայ կիներու մայրական խնամքին, անոնք պիտի ըլլան միշտ լքուած, միշտ բզկտուած ու միշտ խորթացած:

Մարդիկ կրնան երկու կերպով մեծ անուն ու համբաւ ձգել աշխարհի վրայ, և ըստ այնմ ալ կը մնայ իրենց անունը աշխարհի պատմութեան մէջ: կամ բարութեան և օգտակարութեան մէջ գերազանցելով, և կամ չարութեան ու վատութեան մէջ նուաստանալով: Երբեմն ազգերու մէջ առաքինութեան մրցանակ հաստատուած էր: Բարոյական մեծագոյն մրցանակը սահմանելով անոր որ լաւագոյն գործ մը կը կատարէր: Մեր մէջ դեռ անծանօթ է այսպիսի մրցում մը: Մեր Հայրենիքը կործանեցաւ շինութեան կը կարօտի: Մենք գիտենք թէ մեր ազգակիցներէն հարիւր հազարաւորներ անբաղդատելի թշուառութեան մէջ կը գտնուին այս պահուս: Մատաղերամ որբերու աղիողորմ ճիչերը քարերը կը սարսեցնեն, որոնց թիւը յիսուն հազարէն պակաս չէ. ասիկա ալ գիտենք մենք բոլորս: Երբ մեզի դրացի կին մը կամ այր մը մեռնի ու թողու մէկ կամ երկու անչափահաս որբ, մենք կըսկսինք կարեկցիլ անոնց վրայ՝ այս ինչ գէշ մահ էր որ պատահեցաւ ըսելով. մինչդեռ անոնք ամէն կերպով հոգացուելու կարելիութիւն ունին: Հապա ի՞նչ պիտի ըլլայ այն յիսուն հազարներու կացութիւնը: Վայրկեան մը դադրեցուր ընթերցումդ, ազգասէր և բարեսիրտ ընթերցող, և խորհէ հայ որբերուն այդ թիւին վրայ . . . :

Ծառը իր պտուղէն, իսկ այրը իր արդիւնքէն կը ճանչցուի: Եթէ ճշմարտապէս կը սիրես քու ազգդ, ճիշդ ժամանակն է որ ցոյց տաս այդ սիրոյդ ապացոյցը: Ինչո՞վ. գոնէ մէկ հատ, գոնէ մէկ հատ այդ որբերէն քուկդ ընելով: Թող կուսակցութիւններ հարուածեն զիրար, թող եկեղեցականի և աշխարհականի անվերջ կռիւները շարունակեն իրենց գայթակղեցուցիչ հրատարակութիւնները. թող հրապարակային ժողովներու մէջ կուսակցամոլ ամբոխներ զիրար կոխոտեն ու ցեխոտեն. դուն մտիկ մի՛ ըներ անոնց. «Թող տուր մեռեալներուն որ թաղեն իրենց մեռելները», իսկ դուն եկո՛ւր այս բարի գործին նուէրն:

«Կին դու ահա որդի քո» . . . «որդի՛, ահա մայր քո»: Եթէ Աւետարանին մէջէն այդ երկու «ահա»ները պակաս ըլլային, եթէ այդ «ահա»ներով ցոյց տրուած մայրերն ու որբերը դէմ առ դէմ գոյութիւն չունենային, Աւետարանն ու Քրիստոնէութիւն շատ բան կրնային կորսնցնել իրենց արժէքէն: Մեր Տիրոջ՝ Յիսուսի Քրիստոսի ամենավերջին դասն էր ասիկա, որ երբ իր մայրն ու սիրելի աշակերտը Յովհաննէս խաչին հանդէպ կեցած իր կսկծագին գալարումները կը դիտէին լալագին աչօք, օգտուելով առիթէն աւանդեց աշխարհի: Խորունկ կերպով ուշադիր եղիր Աւետարանի այս դասին և բաղդատէ տէրունեան խաչելութիւնը Հայկականին հետ: Նոյն այն գթահրաւէր աղաղակ ձայնն է որ կը լսուի Հայոց Գողգոթայի բարձունքէն, որուն ստորոտը մինչև Կովկաս, մինչև Միջագետքի անապատները, մինչև Պաղեստին, Երուսաղէմ և Եգիպտոս, ցրուած մերկ ու սովալլուկ կը սպասեն մեր ցեղին արմատէն ընձիւղած մատղաշ ծիլերը, ԱՄԷՆ ԲԱՆԷ ԶՈՒՐԿ ՈՐԲԵՐԸ:

Ահա ձեր որդիները, ո՛վ Ամերիկայի և այլ երկիրներու մէջ ապրող երջանիկ մայրեր: Մէյ մէկ հատ միայն որդեգրեցէք անոնցմէ և ահա դուք նախախնամական դերեր կատարած, հրաշքներ գործած պիտի ըլլաք: Անհատաբար որդեգրելով անոնց պաշտպան կանգնելու այս կամաւոր դրութիւնը միայն պիտի փրկէ զանոնք: Բայց որբախնամ կազմակերպութեանց պէտքը անհրաժեշտ է: Եւ ասիկա իգական սեռին, Հայ մայրութեան կը պատկանի: Այլ և այլ հայաշատ կեդրոններու մէջ ունինք Որբախնամ Տիկնանց Ընկերութիւններ: Բայց ոչ միայն չեղած տեղեր ալ կան, այլ և արդէն գոյութիւն ունեցող կեդրոններու մէջ բազմաթիւ կիներ դեռ չեն ուզեր գիտնալ թէ վերջին քանեակ տարիներու մէջ ինչ անցաւ դարձաւ աշխարհի երեսին, ինչե՛ր պատահեցան Հայոց աշխարհին, մէջ, ու կը մնան իրենց արհամարհելի քար անտարբերութեան մէջ, կառչած իրենց պերճանքի, իրենց արդուզարդի փափաքներուն:

Առանց գէթ մէկ որբի պաշտպանը կանգնելու, Հա՛յ աղջիկ, առանց գոնէ որբի մը մայրը ըլլալու, Հայ կին, մի՛ պճներ զքեզ, մի զարդարեր

գլեզ, մի՛ երբեք հրապարակային հանդէսներու և ժողովներու մէջ ազգասիրութիւն ցոյց տալու համար:

Առանց կատարելու ներկայ ժամանակի ամենէն մեծ և ամենէն սրբազան պարտականութիւնդ, մի՛ երթար եկեղեցի, իբր թէ աղօթելու. քու աղօթքդ չպիտի լսուի. Աստուծոյ տաճարը կը պղծուի: Նախ որբ մը, ապա եկեղեցի, ապա աղօթք առ Աստուած:

Որբախնամները ամենէն արժէքաւոր կազմակերպութիւնները պիտի ըլլան:

Հայ մայրեր, Հայ քոյրեր, իրականացուցէք և արժեցուցէք այս անժխտելի ճշմարտութիւնը:

Անհունապէս մեծ այս գործին փարելով է միայն որ պիտի մեծնաք ու անմահանաք, Հայ մայրեր: Անհոգութիւնը կամ նպատակաւոր անտարբերութիւնը ոչ մի փաստով չարդարանալէ զատ, չարութիւն և ոճիր կ՚ենթադրէ: Պատմութիւնը այս տեսակներուն անունն ալ կ՚արձանագրէ:

Քու անունդ ո՞ր տեսակին մէջ կ՚ուզես որ ըլլայ, Հայ աղջիկ, Հայ մայր:



## ՈՐԲԵՐՈՒ ԱՇԽԱՐՀԷՆ

Հետեւեալ գրութիւնը ժամանակին պատրաստուած էր մեր կողմանէ, ի նպաստ Պրուսայի Աբեւեան Որբանոցին հրատարակելի օրացոյցի մը համար, որ մտադրած էր նոյն որբանոցի տնօրէնին՝ Պատ. Պաղտասարեանի որդին Պատ. Օ. Պաղտասարեան, որ այժմ կը վարէ Եդեսի Երիցական Եկեղեցւոյ հովուութեան պաշտօնը:

Յետաձգուած ըլլալով օրացոյցի հրատարակութիւը, իբր խիստ այժմէական կարեւորութիւն ունեցող գրութիւն մը, կը հրատարակենք «Էջմիածին»ի մէջ, պատշաճ յապաւումներով:

* * *

1899 Թուականին ըլլալու էր. Պոլիսէն կին մը եկած էր Երուսաղէմ, իր երկու զաւակները փնտռելու համար գերմանական որբանոցի մը մէջ:

Գերման որբախնամները Բեթլեհէմ քաղաքէն դուրս, երեք մղոնի չափ հեռու տեղ մը, յատկապէս շինուած հաստատութեան մը մէջ, Պոլսէն և ուրիշ տեղերէ շատ մը Հայ որբեր փոխադրած էին, 1895ի և 96ի կոտորածներէն:

Այդ կնոջ առաջնորդելու պատեհութիւնը ինծի ինկած էր:

Քաղաքէն ճամբայ ելլելով, Պաղեստինի տաք օրերէն օր մը, ժամէ մը հասանք որբանոցին մօտ, որ շրջապատուած էր հսկայ պարիսպով մը: Կնոջ կացութիւնը, քանի կը մօտենայինք ուշադրաւ երեւոյթ մը կ՚առնէր: Չէին ազդեր իրեն ոչ ճամբաները խորտուբորտ, ո՛չ հեռաւորութիւնը այս տեղւոյն և ոչ արեւը տօթակէզ. ոյժ մը խորհրդաւոր կը մղէր զինքը յառաջ, ու ես կ՚ընկերանայի իրեն լուռ ու մունջ: Ու երբ հասանք հսկայ դուռներուն առջև, որոնք կղպուած էին խնամով, փոքրիկ անցքէ մը նշմարեցինք որ ներսը՝ հեռուն՝ կը զբօսնուն բազմաթիւ տղայք, ու մենք չէինք կարող իմացնել մեր գալը: Կինը ահագին քարեր վերցնելով կը զարնէր դրան, որ վերջապէս եկան ու բացին: Երբ հասանք աշակերտաց խումբին, կինը աչքերը լայն բանալով խոյացաւ տղու մը վրայ, և մինչ «Արտաշս» ըսելով կը սեղմէր իր կուրծքին վրայ, ուրիշ մըն ալ հասաւ ու թշուառ մայրը՝ «Լեւոն» ըսելով զայն ալ առաւ իր բազկացը մէջ և ինկան գետին: Քովս գտնուող գերման պաշտօնեայք սառած կը դիտէին. ես մօտեցայ որ օգնեմ իրենց վեր կենալու. կինը մարած էր. շատ դժուարութեամբ կարելի եղաւ սթափեցնել զինքը: Տեսարանը յուզիչ էր: Մայրական սիրոյ այսքան կենդանի արտայայտութիւն երբեք չեմ տեսած: Վերջապէս դիմեցինք մեր բուն նպատակին:

Հէգ մայրը կուզէր առնել անկից իր սրտին կտորները, Արտաշն ու Լեւոնը, որոնք Պոլսոյ փողոցներէն վերցուած բերուած էին հոն իբր հայր ու մայր չունեցող որբեր: Դպրոցի տնօրէնութիւնը բուռն կերպով կընդդիմանար. կինը անյողդողդ էր: Եւ առանց պատմութեան մնացեալ մասը շարունակելու ըսեմ, թէ ան մէկ շաբաթ երթեւեկութենէ վերջ, զօրաւոր դժուարութեանց յաղթելով՝ առաւ իր զաւակներն ու տարաւ Պոլիս: Մնացեալ որբերը, որոնք քառասունէն պակաս չէին, հոն մնացին բաւական տարիներ, անշուշտ ի վերջոյ կատարեալ գերմաններ եղած փոխադրուեցան ի Գերմանիա:

Երբ այս դէպքէն հինգ տարի վերջ Պրուսա գնացի և պաշտօնով տասը տարի մնացի, հոն ճանչցայ Պատ. Գ. Պաղտասարեանը և ծանօթացայ իր Աբեւեան Որբանոցին, քաղաքին Հարաւարեւմտեան կողմը, Զոպան Պէյի բարձանց վրայ, Թաթար գաղթականներու թաղի մը մէջ, ուր շատ քիչ Հայեր կային: Պատ. Պաղտասարեան մեծա-

ETCHMIADZIN
A RELIGIOUS MONTHLY PAPER
PUBLISHED BY
REV. V. V. KASPARIAN
P. O. Box 290 Fresno, Cal.
SUBSCRIPTION PRICE $1.00 PER YEAR

Entered at the postoffice at Fresno as second class mail matter

VOL. II, NO. 3 MARCH 1919 PRICE 10 CE

մեծ դժուարութեանց հանդէպ կը գտնուէր՝ այդ այնքան փափուկ գործը վարելու համար: Սակայն ինք կը սիրէր զայն, վասն զի շատ լաւ համոզուած էր թէ, եթէ անհատը սահմանուած է աշխարհի մէջ հանրութեան որ և իցէ կերպով ծառայելու, որբերու ծառայելը բոլորէն գերազանց է. և ինք այդ զօրեղ համոզումէն առաջնորդուելով՝ երկար տարիներ ծառայեց որբերու, չարքաշութիւն, համբերութիւն և սէր գնելով իր աշխատութեանց մէջ: Նա իր որբերուն բաղրքական կրթութիւն տալ հարկադրուած էր անշուշտ, սակայն երբեմն ալ կը սիրէր տեսնել զանոնք քաղաքին Ս. Աստուածածին Եկեղեցւոյ խորանին հանդէպ ծնրադրած, այս կ'առաջնորդէր զանոնք Ազգային առաջնորդարան, ուր պատշաճ խրատական ուսմանց կը բաշխուէր անոնց: Բաց էին որբանոցին դռները ամեն այցելուի առջև: Քահանայ մը միշտ կ'երթար հոն. շատ անգամ ես ալ կը յաճախէի և սիրալիր ու օգտակար տեսակցութիւն կ'ունենայի իմաստութեամբ ալևորած պատուելիին հետ, զոր Հայրիկ կը կոչէին որբերը, որոնցմէ շատեր եթէ իրենց հօրենական տան մէջ ըլլային, պիտի զրկուէին այդ կրթութենէն ու զարգացումէն:

Պատ. Պաղտասարեան քառասուն երկար տարիներ կրցաւ կանգուն պահել Պրուսայի մէջ գըթութեան այդ սուրբ հաստատութիւնը, Հայկական որբանոցը: Ես մօտէն գիտեմ թէ ինչ խոշոր դժուարութեանց դէմ մաքառիլ հարկադրուած էր ան. բայց գործը երբեք չէր կաղար, յուսահատութիւն բառը չի կար իր աշխատութեան բառարանին մէջ: Այդքան ընդարձակ ժամանակի մէջ որքա՞ն որբեր փրկեց նա, տալով անոնց դաստիարակութիւն, գործ և ապագայ: Անոնցմէ շատ կան նոյն իսկ Ամերիկայի մէջ և լաւ վիճակ ունին. քանի մը հատ ալ Ֆրէզնոյի մէջ կան ամուսնացած և զաւակներու տէր բարեկիրթ մայրեր եղած են:

Պատ. Պաղտասարեան որբերու ծառայելով, ծառայած եղաւ նաև ամբողջ ազգին: Վկայ են բազմաթիւ բարոյական և լուրջ հրատարակութիւնները, որոնք ի նպաստ որբանոցին տարածեց ազգին մէջ: Մինչև 1915 հրատարակուած օրացոյցները սովորական գործէ մը աւելի մատենագիտական հատորիկներու շարք մի են, որոնց մէջ դպրոցական պատանին, սալոնի օրիորդը, խոհանոցի տիկինը, գիւղացի աշխատաւորն ու քաղաքացի վաճառականը, կրօնականը ու աշխարհականը և ամեն դասակարգի անհատները կրնան գտնել հրահանգիչ զուարճալիքներ և ամեն նիւթի վերաբերեալ օգտակար գիտելիքներ:

Գերմանական հայ որբանոցի մը կեանքէն, յանձին հայ մօր մը, նախ ըրած մէջբերումիս նըպատակը հասկնալի եղաւ անշուշտ: Ներկայ համաշխարհային պատերազմին մէջ սա երկու որոշ իրողութիւնները կը նշմարուին, ցեղային ինքնապահպանութիւն՝ կեանքի, ինչքի և պատւոյ ապահովութեանց հետ, և բռնապետութիւն: Առաջին գաղափարին ռահվիրաներն ըլլալ կը կարծուին Դաշնակիցները, իսկ երկրորդն հետապնդողն է գերման միլիթէրիզմը, իր պոչին կապած ունենալով կարգ մը բախտախնդիր խամաճիկներ: Անձնական և ազգային նախաձեռնութիւններ պէտք են փրկելու համար թուրք տաներու, գերման ձեռքերու և ուրիշ ցեղերու ազդեցութեան տակ գըտնուած մեր անհամար որբերը:

## ՖՐԷԶՆՈՅԻ ԵՒ ՖԱՒԼԸՐԻ
## ՀԱՅՈՒՀԵԱՑ ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Սոյն երկու ընկերութիւնները Քալիֆորնիոյ բոլոր Հայաշատ տեղերու մէջ որբախնամներ կազմելու և յետոյ բոլորին միջև համագործակցական միութիւն մը հաստատելու համար ջանքեր սկսած են ընել: Ասիկայ գործին ստիպողականութեան հանդէպ քիչ մը ուշ է, բայց լաւ է ուշ քան բնաւ: Պէտք է ամեն ուժ թափել այս կենսական գործին յաջողութեան համար: Այս թէ ոչ մեր յիսուն հազար որբերուն մեծագոյն մասը, թերևս հարիւրին իննսունը, պիտի կորսնցնենք: — —

Մարդասպանութիւնը միայն դանակով ու հրացանով չըլլար: Մեր արիւնարբու թշնամին

թողած այդ Թշուառ մնացորդներն ալ մենք ազատ-ուած պիտի ըլլանք, եթէ շուտով չի կազմակերպու-ին ազատ երկիրներու մէջ ապրող մեր տկինները։ Մարդասպանը եղջիւր չունենար։

Շարժեցէք ով դուք «Տիկնայք Փափկասունք Հայոց աշխարհին»։ Այդ որբերը ձեր զաւակները թող ըլլան. դուք անոնց մայր եղէք։ Ուշի ուշով և կրկնակի կարդացէք, թերթիս այս թիւով գրուած «Առաջնորդող»ը։ Մարդոցմէ յարգանք ու պատիւ վայելելու, պատմութեան մէջ անմահա-նալու, Աստուծոյ օրհնութեանը լիովին արժա-նանալու համար միակ պատեհութիւնն է որ կայ, իմաստուն եղէք և մի փախցունէք զայն։ Այս կերպ բարեգործութեան փառքին հաւասարող ուրիշ փառք չի կայ։Անկէց հեռու մնալը նուաստութիւն է և անիծարեր։ Սոսկացէ՛ք ասոնցմէ և խորշեցէք։

Շուտով կազմակերպուեցէք ու գործի սկսե-ցէք։ Որ և իցէ տարբեր հոսանքի ազդեցութեանց տակ մի իյնաք։ Օրինակ առէք Ֆրէզնոյի և Ֆաու-լըրի որբախնամները, որոնք անկախօրէն կը գոր-ծեն և հրաշալի արդիւնք ձեռք կը բերեն։

Ինչպէս կը տեղեկանանք թերթերէն, Ամերի-կացի կազմակերպեալ խումբեր, մէկը միւսին ե-տեւէն, ահագին պաշարով, մանկապարտէզի ամեն տեսակ պիտոյքներով, նոյն իսկ բազմաթիւ բի-չըքներով, կը մեկնին մեր երկիրը. ինչ ընելու, պատասխանը պարզ է և . . ։ Ալ մնացեալը դուք խորհեցէք։

---

## ԵԿԵՂԵՑԱՍԷՐ ԵՒ ՈՐԲԱԽՆԱՄ ՏԻԿՆԱՆՑ

### Միացեալ պազարի և վիճակահանութեան հանդէսը

---

Փետր. 22ին, երեկոյեան ժամը 7·30ին, Փաու-լըր Լէյզըրի սրահին մէջ կատարեալ յաջողու-թեամբ տեղի ունեցաւ Տիկնանց երկու Միութիւն-ներու կողմանէ բաւական դժուարին աշխատու-թեամբ պատրաստուած հանդէսը։ Խռնուած բազ-մութիւնը մինչև ժամը 12 մնաց հոն, առանց եր-բեք ձանձրանալու։

«Մեր Հայրենիք»ը ժողովրդեան կողմէ միա-համուռ երգուելէ յետոյ,Եկեղեցւոյս Հովիւը բացման հակիրճ խօսքերով երկու ընկերութեանց ալ պատմականը պարզեց, և կոչ ըրաւ բոլոր հայ կիներուն անդամակցիլ անոնց երկուքին հաւասա-րապէս։

Օր. Ս. Մաղաքեան դաշնակի վրայ, Պ. Ս. Էլմասեան ջութակով, ընտիր կտոր մը նուագեցին։

Այնուհետև խօսեցաւ Գեր. Տ. Բարգէն Եպիս-կոպոս։ Նորին Սրբազնութիւնը, ծանրանալով Հայ կնոջ վերածնեալ Հայաստանի մէջ կատարելիք պարտականութեանց վրայ, բացատրեց թէ ի՞նչ-պէս պէտք է պատրաստուին անոնք հոս ազատ ու քաղաքակիրթ Ամերիկայի մէջ, որպէս զի մերձա-ւոր ժամանակի մէջ երբ հայրենիք վերադառնա-լու օրհնեալ ժամը հնչէ, երթան հոն ու մարզուած ոյժերով նուիրուին անոր վերածնութեան և յառա-ջադիմութեան սուրբ գործին։

Հայ դպրոցի Տեսուչ Պ. Պ. Թորոսեանի աշ-խատութեամբ՝ փոքրիկներուն կողմէն որբերուն կեանքէն պատրաստուած պատկերը շատ ազդ-ուիչ եղաւ։

Սրահին ճակատը զարդարուած էր ձեռագոր-ծերու նոր հաւաքածոյով մը, որոնք բոլորն ալ տան ձեռագործ նուէրներ էին։ Ասոնց մէկ մասը աճուրդի և մէկ մասն ալ վիճակահանութեան գրուելով սպառեցան։ Սրահին մէկ կողմն ալ մըր-գեղէններու և շաքարեղէններու հարուստ ու ճա-շակաւոր պէսպիսութիւն մը կար։ Ամենայն ինչ սպառեցաւ ի վայրկեան ժամանակի։

Այս առթիւ կ'արժէ ըսել ,որ այն երկու ըն-

Ամբողջ հասոյթը եղած է 1281 տոլար։

կերութեանց համագործակցութիւնը թէ նիւթա-պէս և թէ բարոյապէս շատ արդիւնաւոր եղած է Ֆրէզնոյի մէջ։ Ուժերնին կեդրոնացնելով, աւելի մեծ արդիւնք կրնան առաջ բերել, կարգ մը դըժ-ուարութիւններէ բոլորովին ազատ կըլլան և իրա-րու նկատմամբ թիւրիմացութիւններու և ըսի ը-սաւներու առիթ չըլլար բնաւ։ Ժողովուրդն ալ այս գեղեցիկ արդիւնքները տեսնելով՝ հաւասա-րապէս կ'աջակցի ու կը գնահատէ իրենց ջանքե-րը. որուն խօսուն ապացոյցն էր նկարագրուած հանդէսին այնքան փայլուն յաջողութեամբ պը-սակուիլը։

Պատիւ Ֆրէզնոյի կանանց այս երկու Միու-թիւններուն, որոնց համագործակցութիւնը կըր-նայ բարի օրինակ ըլլալ ուրիշ շատերուն։

Այս օրինակելի համերաշխութիւնը պերճա-խօս ապացուցութիւն մըն էր բոլոր հայ օրիորդ-ներուն և տիկիններուն, որ անխտիր կերպով գան ու միանան անյապաղ թէ Եկեղեցասէրին և թէ Որբախնամին։



## ՍԱՆ ՖՐԱՆՍԻՍԿՈՅԻ ՄԷՋ ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ԺՈՂՈՎ

Փետր. 16ին, Կիրակի օր, Սան Ֆրանսիսկոյի Եպիսկոպոսականաց Եկեղեցւոյն մէջ պատարագեց և քարոզեց Գեր. Տ. Բաբգէն Եպիսկոպոս: Սարկաւագութեան պաշտօնը կատարեց Լօս Անճըլըսէն Արժ. Տ. Ատոմ Քահանայ Մելիքեան: Մկրտուեցան երեք երախաներ:

Նոյն երեկոյին տեղի ունեցաւ մէկ միլիոնի հանգանակութեան ժողովը: Խօսեցան Տ. Ատոմ Քահանայ, Տր. Վայկունի և Տ. Բաբգէն Եպիսկոպոս: Վերջինս գլխաւոր խօսողն ըլլալով, յայտարարեց հանգանակութեան բացումը որ սպասուածէն շատ աւելի արդիւնալից եղաւ:

## Ս. ԵՐՐ. ԵԿԵՂԵՑԻՈՅ ԳՐԱԴԱՐԱՆԻ ՄԻՈՒԹԻՒՆ

Սոյն Միութեան տարեկան ժողովը տեղի ունեցաւ Փետր. 16ին, Եկեղեցւոյ ներքնայարկը:

Նոր Վարչութեան անդամներ ընտրուեցան, Պարոնայք Յարութիւն Կոստանեան,՝ Ատենապետ, Պետրոս Մինաեան՝ Ատենադպիր, Յակոբ Բաբիկեան՝ գանձապահ, Օննիկ Պօյաճեան՝ Գրադարանապետ, և Յարութիւն Մատղաշեան, Մկրտիչ Խօլլիկեան Բիւզանդ Սարգիսեան:

Միութեան անդամոց թիւը կը հասնի 120ի, որոնց 15ը դեռ զինուորական ծառայութեան մէջ են: Ունի մօտ չորս հարիւր գիրքերու հաւաքածոյ մը: Երբ ճանապարհները բացուին, առաջին առթիւ նոր գիրքեր պիտի յանձնարարուին:

Գրադարանը բաց է Երեքշաբթի և Հինգշաբթի երեկոները ժամը 7-30էն 9. իսկ Կիրակի օրերը ժամը երկուքէն չորս:

## ՔԻՉԷՆ ՇԱՏ ՀԱՍԿՑԻՐ

—Կեանքի վտանգաւոր փորձութեանց կղզեաց ալիքներուն մէջ տարուբերուող մարդուն համար, փրկութեան նաւակն է Տունը: Իսկ այդ նաւակին ղեկավարն է իմաստուն կին մը:

—Ճշմարտապէս Աստուածպաշտութիւն, իրարու հանդէպ հաւատարմութիւն, սէր և համակրութիւն ցոյց տուող ամուսիններ, երկինքի արքայութիւնը երկրի վրայ փոխադրած են:

—Շատ մը ամուսնացեալներ դժոխքը վար կը բերեն: Վասն զի [illegible] լեզուներ շատ [illegible] միրայ լե-

գուն, խօսիլ չեն գիտեր: Դպրոցներու մէջ շատ մը բարձր գիտութիւններու հմտացած են, բայց տուն մը կառավարելու իմաստութենէն հիմնովին զուրկ են:

—Ժամանակակից քաղաքակրթութիւնը կ'արգիլէ մարդոց տնտուն կենդանիներուն զարնելը կամ որ և իցէ կերպով չարչարելը: Բայց տակաւին կան տուն կենդանիներ, էրիկ կիներ, որոնք զիրար կը ծեծեն անխնայ ու կը նեղեն շատ մը կերպերով: Ասոնք ո՞ւր տեղ կապել պէտք է, և ի՞նչով կերակրելու է:

—Ձագեր ունեցող թռչունը, որ անխելք ու ապուշ կը կարծուի, արտերուն մէջ գտած հատիկը բերանն առնելուն պէս՝ խոկոյն կը թռչի իր ձագուկներուն կը տանի: Տեսա՞ծ էք անոնց ճռճռալից ուրախութիւնը:

—Մարդիկ ալ կան, որ թռչունին նման անխելք ու ապուշ չեն, և իրենց օրավարձն առնելնուն պէս ուղղակի գինետուն կը տանին, և յետոյ կ'երթան իրենց տունը, գինով վիճակի մէջ: Տեսա՞ծ էք անոնց զաւակներուն ալ հեծեծալից արտմութիւնը: Ո՞վ է ապուշը, թռչո՞ւնը թէ մարդը:

## ՆԱՄԱԿՆԵՐ

Թերթերուն օգտակարութիւնը մարդկային կեանքին մէջ անուրանալի է: Առանց թերթի անարեւ մութ աշխարհ պիտի ըլլար մեր կեանքը: Թերթն է որ օրը օրին կուգայ տեսակցիլ մեզ հետ և պատմել թէ ի՞նչե՞ր կ'անցնին կը դառնան մեր մօտիկը և մինչև աշխարհի հեռաւոր անկիւնները: Թերթով է որ կը մշակուին ու կը ճոխանան մեր մտքին մէջ գտնուած այն ծանօթութիւնները զորս սորված ենք մեր դպրոցական կեանքի սահմանափակ շրջանին մէջ: Թերթը դպրոցին շարունակութիւնն է: Թերթով է որ յարաճուն կերպով կը կրթուին ու կ'ազնուանան մեր սրտի զգացումները: Շատ անգամ թերթի մը անկիւնը նետուած աննշան կարծուած լուրի մը մէջ, խորհող մտքի մը համար, գեղեցիկ դաս մը կայ ծածկուած: Թերթով է որ վերջապէս կը զատուին ու կը մաքրագործուին մեր բարոյական ու հոգեւոր սխալներն ու տկարութիւնները:

Այս ըմբռնումներով ո՛րքան կշռուած, որքա՛ն պարկեշտ բովանդակութիւն ու ուղղութիւն պէտք է ունենայ թերթ մը: Եւ թերթ հրատարակող մը, յօդուածագիր մը ժողովուրդին ուսու-

ցիչն է։ Ուսուցիչ մը իր աշակերտին չի սորվեցներ հայհոյանք, և ոչ ալ զրպարտել, սուտ ու կեղծել և ծաղրել։

Մենք այս թերթ ուսուցիչներէն այնքան շատ ունինք Ամերիկայի մէջ, որ տուն կայ՝ ուր օրական հինգ վեց հատ մէկէն կը մտնեն, ինչպէս մեր տունը։ Ասոնց մէջէն հազուագիւտ բացառութիւնները մէկ կողմ առնելով, միւսները մեզի այնպիսի բաներ կը խօսին ու կը պատմեն, այնպիսի աղտեղ գրականութիւն մը մեզի կը հրամցնեն, որ մարդ կը սոսկայ։

Այս կարգի թերթերու առատութեան ժամանակ, կարծես անապատին մէջ ովասիս մըն է «Էջմիածին»ը, որ իր փոքրիկ գիրքով ամիսն անգամ մը միայն կ'այցելէ մեր տունը, բայց որչա՜փ կը սիրենք մենք զինքը, իր բերած լուրջ խորհուրդներով, ողջամիտ դասերով, կոկիկ ու անսեթեւեթ բացատրութիւններով։ Շատ փոքրիկ է ան, բայց իր կատարած դերը շատ մեծ է հասկցողին համար։ Անոր «Առաջնորդող»ներուն շատ ու շատ պէտք ունինք մենք։ «Ընտանեկան Հաստատութիւն»ը, «Ամերիկահայ Եկեղեցին», Եկեղեցի և Ժողովուրդ»ը, և բոլորն ալ մէյ մէկ անմահ դասեր էին։

Ձեր Փետրուարի թուով գրած «Կրօն»ը շատ բան կ'արժէ։ Իցի՜ւ թէ կարդային զայն մեր սկեպտիկները։

Ներկայ շրջանի առաջին թիւով «Թելադրական» մը գրած էիք ձեր թերթին մէջ և հարցումներ ուղղած ընթերցողներուն։

Ահա տկար կնոջ մը զգացած տպաւորութիւնը, անկեղծօրէն։

Ֆրէզնօ (Տիկ.) Ե. ԳԱՎՈՅԵԱՆ

## ՈՒՐԻՇ ՆԱՄԱԿ ՄԸ

Սիրելի Հայր Սուրբ,

Ուրախ եմ որ «Էջմիածին»ը պիտի շարունակէք ի շահ Եկեղեցւոյ։ Այս երկրին մէջ եկեղեցւոյ բազուկներէն մին նկատուած է թերթը, և այս պատճառով եկեղեցիներ առհասարակ իրենց ամսօրեայ պարբերականը ունին։ Եւ դուք շնորհաւորելի էք այդ օգտակար գրութիւնը մեր մէջ առաջին ներմուծողը ըլլալնուդ համար։

Բնաւ հոգ մի ընէք թէ փոքր է անոր ծաւալը։ Ես ուշի ուշով հետևելով ձեր «առաջնորդող»ներուն, գտայ որ շատ մեծ կըլլայ անոր օգտակարութիւնը հանճարեղ և անկողմնակալ ընթերցողի մը համար։ Անոր պարզ ու մաքուր հայերէնը այնչափ քաղցր կը հնչէ իմ ականջներուս, որ ես շատ անգամ կը սիրեմ կրկնել ընթերցումը։ Ու ամեն հասակէ և սեռէ անձանց համար իսկապէս առաջնորդող դասեր կան անոնց մէջ։

Եւ ես կը մաղթեմ որ Աստուած կեանք տայ ձեզի, որ ոչ թէ միայն տարի մը եւս, այլ և դեռ բազում տարիներ կարող ըլլաք շարունակել անոր հրատարակութիւնը։

Սան Ֆրանսիսկօ Ծ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

## ՏՕՆԱԿԱՆ ԳԻՏԵԼԻՔՆԵՐ

Մարտ 3էն մինչև Ապրիլ 18 Մեծ Պահոց օրեր են։ Ապրիլ 20ին Զատիկ է։

Ժամերգութեանց պահերը․

Կիրակի առաւօտներ 9·30էն 12։

Չորեքշաբթի երեկոները 7·30ին։

Ուրբաթ առաւօտները 9ին։

Շաբաթ երեկոները 5·30ին։

Պսակի համար արգիլեալ միջոց է ամբողջ Մեծ Պահքը և Զատիկի առաջին շաբաթը։

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ

Անցեալ տարի թերթիս երրորդ թիւին մէջ բացատրուած ըլլալով Մեծ Պահոց իւրաքանչիւր շաբթուան խորհուրդները եկեղեցական ըմբռնումով, այս անգամ չուզեցինք կրկնել։

Եկեղեցական կեանքի մէջ Մեծ Պահքը Հայ Քրիստոնէի սրտին ու մտքին, հոգւոյն ու ընդհանուր բաղձանքներուն ամենէն մօտիկ շրջանն է։

Մարդ եթէ փոքր ինչ մեկուսանալով աշխարհիկ հոգերէն, իմաստասիրէ այդ շրջանը անկողմնակալ կերպով, արդարութեան կարօտ բազմաթիւ սխալներ կը գտնէ իր մէջ, և կը վարուի ինքնիրեն հետ ալ ճիշտ այնպէս, ինչպէս կը վարուի իր պարտէզի ծառերուն հետ։ Ինչո՞ւ կը կտրեն այգիի վրայ աւելորդ նկատուած ճիւղերը, ինչո՞ւ կը կարճեն երկայն ճիւղերը։ Որովհետև անոնք արգելք կըլլան առատօրէն պտղաբերելուն։ Միևնոյն երևոյթը մարդ պէտք է նկատէ իր անձին վրայ, իր կեանքին մէջ, ուր պիտի տեսնէ ոչ սակաւ կտրուելիք, ի բաց նետուելիք ճիւղեր։

— Ընթերցողին թողլով որ ինքնաքննութեամբ գտնէ իր ունեցած այն շատ մը աւելորդ ճիւղերը, չար ունակութիւնները, անոնցմէ միայն մէկ հատ յիշել շատ կարևոր է։

Մեր ընտանեկան բարքերուն մէջ խիստ ցաւալի վիճակ մը կայ, որ համաճարակ հիւանդու-



թեան նման կը տարածուի դժբաղդաբար: Ամուսնական անհամաձայնութիւնները կը շատանան, ու տարիներով իրարու հետ չի խօսողներ կան: Բարեկամական միջամտութիւնը քիչերու միայն կ'օգնէ: Շատեր ազխօրէն կը մնան իրենց անիմաստ յամառութեան մէջ: Բարի մարդու, բարի Հայու և բարի Քրիստոնէի ընթացք չէ ասիկա: Ասանկները պէտք է ինքնաքննադատութեան գան: Ասանկ խըռով սրտերո՞վ պիտի տօնենք Զատիկը: Ասանկ ատելական զգացումներո՞վ պիտի տօնենք վաղը Ազգին փրկութիւնը և Հայաստանի ազատութիւնը: Եւ մեռնիլ կայ աշխարհի վրայ. վա՜յ անոր որ խռով կը մեռնի:

Եկեղեցին կը հրաւիրէ զմեզ, Մեծ Պահոց մէջ անդրադառնալ մեր կեանքի տկար կողմերուն վրայ և միջոցներ ցոյց կուտայ սրբագրելու զանոնք:

Մեր հայրենի երկրին մէջ, իսկապէս պահք կար: Անոր ազդեցութիւնը զգալի կըլլար մարդոց կեանքին վրայ:

Հոս միջավայրի տարբերութիւնը պատճառ պէտք չէ ըլլայ որ մենք չի լսենք եկեղեցւոյ այդ բարձր կոչը, ու չանդրադառնանք մեր սխալներուն վրայ:

Անձիդ հետ, ընտանեկան պարագաներուդ հետ, և բոլոր ծանօթներուդ հետ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ ՈՒՆԵՑԻՐ: Ահա այս է Եկեղեցւոյ պատգամը ժողովուրդին, Մեծ Պահոց առթիւ:

---

Ամուսնութիւն

1919 փետր. 22

Միհրան Մրխալեան, Սան Ֆրանսիսկոյէն
Աղաւնի Կարապետեան, Ֆրէզնոյէն

---

Նշանախօսութիւն

* * *

1919 փետր. 22

3 Յակոբ Սրիմեան
Արուսեակ Մարալեան

---

Մկրտութիւն

Մ. Կարօպէկեանի երախան՝ Ազատ

— Ռ. Ըլղատեանի երախաները՝ Արմաւենի, Մանուշակ, Գոհար և Յարութիւն:

Գ. Ֆէթիի երախան Լիզի

Մ. Մեծատուրեանի երախան՝ Մարգարիտ

Հիւանդներ

Գաւառական Հիւանդանոցին մէջ՝ Տիկնայ… Սաթենիկ Աֆրիկեան, Հեղինէ Ղանչալեան և Ազնիւ Փանոսեան:

---

ՄԿՐՏՈՒԹԵԱՆ ՎԿԱՅԱԿԱՆՆԵՐ

Մկրտուած երախաներու վկայականները պատրաստ են: Ստանալու համար, Կիրակի առաւօտները դիմեցէք Պատ. Հոգաբարձութեան:

---

ԼՈՒՐ ՏՈՒՐ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՀՈՎՈՒԻՆ

* * *

Երբ տունիդ կամ ծանօթներուդ մէջ հիւանդ կայ:

Երբ գիտես թէ բանտարկեալ մը կայ:

Երբ գիտես թէ խռովեալներ կան:

Երբ գիտես թէ նորեկ կայ:

Տեղափոխութեան պարագային՝ նոր հասցէդ:

Բնակարանի հասցէ՝ 2143 Վէնբուրա ավնիւ, —

—Թէլէֆօն 4138- W—

---

ԷՋՄԻԱԾԻՆ

Կրօնա-Բարոյական Ամսաթերթ

Հրատարակութիւն՝

ՎԱՐԴԱՆ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ

Բաժանորդագին՝ տարեկան մէկ տոլար

Նամակ, ծրար ևն. ղրկուելու են վար… հասցէով: Բաժանորդագինը կանխիկ է:

ՎԱՐԴԱՆ Ծ. Վ. ԳԱՍՊԱՐԵԱՆ,

Փօսթ Օֆիս Պօքս 290, Ֆրէզնօ…

---